## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն. — Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։



---

# ԱԼԵՔՍԱՆԴՐ ԶՈՒՏԿԻԽԻ ՄՐՑԱԿԻՑՆԵՐԸ

Բարձրորակ արտադրանքի համար մղվող պայքարում Երևանի Մահուդի ֆաբրիկան քայլում է մեր ռեսպուբլիկայի առաջավոր արդյունաբերական ձեռնարկությունների շարքում։ Պլանները սիստեմատիկ կատարելու և գերակատարելու հետ միասին ֆաբրիկան իր արտադրանքի 95 տոկոսը տալիս է առաջին տեսակի պլանով նախատեսված 84 տոկոսի փոխարեն։

Մակայն ֆաբրիկայում այսպես չէր վիճակը մինչև այս տարվա սկիզբը, մինչև անվանի վարպետի օգնական Ալեքսանդր Զուտկիխի նախաձեռնությամբ բարձրորակ արտադրանքի համար շարժման ծավալումը։ Մինչ այդ ֆաբրիկան ինչպես քանակապես, այնպես և արտադրանքի որակի տեսակետից սիստեմատիկ կերպով թերակատարում էր պետական առաջադրանքները։

Ֆաբրիկայի կոլեկտիվն իր այսօրվա հա-

ջողությունների հասավ շնորհիվ սոցիա-
լիստական մրցության և ստախանովյան
շարժման լայն ծավալման, շնորհիվ Ջուտ-
կիխի առաջարկած աշխատանքի մեթոդների
կիրառման, շնորհիվ այն բանի, որ ֆաբրի-
կայի պարտիական կազմակերպությունը
կարողացավ գլխավորել ու ճիշտ հունի մեջ
դնել կոլեկտիվի արտադրական խանդավա-
ռությունը, ընթացք տալ ու կենսագործել
բանվորների նորարական առաջարկություն-
ները, նրանց առաջարկած աշխատանքի
նոր մեթոդները:

Գործարանն իր այսօրվա հաջողություն-
ներին՝ հասավ նաև շնորհիվ այն բանի, որ
պարտկազմակերպության ագիտկոլեկտիվը
ամենօրյա, կոնկրետ, գործնական պայքար
էր տանում արտադրանքի որակի բարձրաց-
ման համար: Թե ինչպես ֆաբրիկայի ագի-
տատորները իրենց աշխատանքով օգնում
են արտադրանքի որակի բարձրացման
գործին այդ կարելի է ցույց տալ բազմաթիվ
օրինակներով: Բայց մեր նպատակն է այս
հոդվածով ցույց տալ, որ արտադրանքի ո-
րակի բարձրացումը կախված է ոչ միայն
խոշոր միջոցառումներից, այլև արտադրու-
թյան «մանրուքներից», որոնք հանդիպում
են ամեն քայլափոխում, «մանրուքներ», ո-



րոնք արգելակում են մարդկանց աշխա-
տանքին և որոնց վերացման գործում խոշոր
անելիքներ ունեն անմիջապես արտադրու-
թյան մեջ աշխատող ագիտատորները:

Երբ փետրվար ամսին ֆաբրիկայի կոլեկ-
տիվը քննություն էր առնում Ալեքսանդր
Ջուտկիխի առաջարկությունը, մանողուհի
Ռոզա Ղազարյանը պարտավորություն ըս-
տանձնեց իր բրիգադայում աշխատանքը
կազմակերպել այնպես, որ տա միայն
բարձր որակի արտադրանք: Այդպիսի պար-
տավորություններ ստանձնեցին նաև մի
քանի ուրիշ բրիգադաներ: Հաջորդ իսկ օր-
վանից այդ բրիգադաները պայքար սկսեցին
իրենց վերցրած պարտավորությունները
կյանքում կենսագործելու համար: Նրանց
ամենուրեք օգնում էր ֆաբրիկայի պար-
տիական կազմակերպությունը:

Մեկ-երկու շաբաթ անց Ռոզա Ղազարյա-
նը նամակ գրեց Ալեքսանդր Ջուտկիխին՝
խորհուրդներ հարցնելով նրանից: Շուտով
անվանի նորարարից ստացվեց պատասխա-
նը: Պատմելով իր ղեկավարած բրիգադայի
աշխատանքի մասին, Ջուտկիխը հայտնում
էր նաև սոցիալիստական մրցության մեջ
մտնելու իր պայմանները: Ջուտկիխի այդ
մտերմական նամակը, սոցիալիստական

մրցության հրավիրելու վերաբերյալ նրա առաջարկությունը ջերմ արձագանք գտավ Մահուդի ֆաբրիկայի աշխատողների ամբողջ կոլեկտիվում։ Զոտկինի նամակից բանվորները պարզ կերպով տեսան, թե սովետական այդ առաջավոր բանվորը իր առաջարկությամբ ինչպիսի նոր, բարձր աստիճանի է բարձրացնում ստախանովյան շարժումը, ինչպիսի նոր իմաստ է մտցնում սոցիալիստական մրցության մեջ։ Եվ սոցիալիստական մրցությունը ֆաբրիկայում նոր թափ ստացավ։ Ինչպես Ռոզա Ղազարյանի, այնպես և մյուս բոլոր բրիգադաները սկսեցին իրենց ամբողջ ջանքերը գործադրել Ալեքսանդր Զոտկինի հետ սկսած սոցիալիստական մրցությունից պատվով դուրս գալու համար։

Ահա թե ինչ է պատմում մանարան ցեխի ագիտատոր Ռ. Մարգարյանը։

— Թելի որակի համար մեծ նշանակություն ունի այն բանը, թե որքան լավ են ձգված իլիկների փոկերը։ Բոլորիս էլ այդ պարզ էր, բայց ուշք չէինք դարձնում այդ «մանրուքի» վրա։ Զոտկինի հետ մրցության մեջ մտնելուց հետո Ռոզան դարձավ շատ խստապահանջ ամեն ինչի նկատմամբ։ Եվ ահա այնպիսի «մանրուք», ինչպիսին է փո-



կերի ձգումը նրա համար ստացավ խոշոր նշանակություն։ Եվ իրոք, փոկերը ժամանակին և լավ ձգելով Ռոզան հասավ հում նյութի զգալի խնայողության և թելի որակի բարելավման։ Ես փոկերը ժամանակին ձգելու մասին զրուցեցի ցեխի մյուս մանողների հետ և մատնացույց արի Ռոզայի օրինակը։ Արդյունքը խոշոր եղավ։ Միայն այդ «մանրուքի» վերացման շնորհիվ թելի որակը շեշտակի կերպով բարձրացավ։

Ալեքսանդր Զոտկինի հետ սկսած մրցությունից պատվով դուրս գալու համար Ռոզան պայքարում է ոչ միայն բարձրորակ արտադրանք տալու այլև իր առաջադրանքները գերակատարելու համար։ Եվ նրա պրպտող միտքը շարունակ նորանոր ուղիներ է փնտրում այդ նպատակին հասնելու համար։

Վերլուծելով աշխատանքի բաժանումը իր բրիգադայում Ռոզան որոշեց մի բանվորուհի փոխադրել մեքենայի մյուս կողմում աշխատելու։ Այս փոքրիկ, առերևույթ հասարակ թվացող նորամուծությունը խոշոր նշանակություն ունեցավ բրիգադայի պլանների կատարման գործում։ Այժմ, երբ թելը կտրվում է մեքենայի մյուս կողմում, այնտեղ աշխատող բանվորուհին այն իս-

կույն կապում և փոխանցում է մեքենայի այս կողմում աշխատողին։ Այսպիսով խոշոր չափով կրճատվում է իլիկների պարապուրդները։

Ագիտատոր Ռ. Մարգարյանը Ռոզայի այս նորամուծության մասին նույնպես պատմեց իր զրույցի ժամանակ և ցեխի մյուս բանվորներին ցույց տվեց Ռոզայի բրիգադայի աշխատանքը։ Շուտով ցեխի բոլոր մանող բրիգադաները իրենց աշխատանքը կազմակերպեցին Ռոզայի բրիգադայի օրինակով։

Ահա նաև մի օրինակ ներկման ցեխի ագիտատոր Ս. Պետրոսյանի աշխատանքի փորձից։ Այն հերթափոխը, որտեղ աշխատում է Պետրոսյանը, ներկման որակի գործում ետ էր մնում մյուս հերթափոխից։ Ագիտատոր Պետրոսյանը ուսումնասիրեց այդ հերթափոխի աշխատանքը և տեսավ, որ այդտեղ մեծ գաղտնիք չկա։ Բանը նրանում էր, որ նրանք, նախքան գործվածքեղենը ներկման դնելը, այն ջոկում և դասավորում էին ըստ կտորների մեծության, որը հնարավորություն էր տալիս բոլոր կտորների համար էլ կիրառել ներկման նույն ռեժիմը։ Այդ փորձն իրենց մոտ փոխադրելով Պետրոսյանը մեծապես օգնեց արտադրանքի որակի բարձրացման գործին։



Ինչպես արտադրողականության բարձրացմանը, այնպես և արտադրանքի որակի բարելավմանը նվիրված իր զրույցները ագիտատոր Ս. Պետրոսյանը երբեմն վեր է ածում յուրատեսակ հարց ու պատասխանի, առաջարկություններ մշակելու խորհրդակցության։ Բանվորների ուշադրությունը կենտրոնացնելով արտադրության որևէ կոնկրետ հարցի վրա, ագիտատորը նրանց հրավիրում է արտահայտվելու այդ հարցի լուծման մասին։ Այդպիսի զրույցները շատ հաճախ մեծ արդյունքներ են տալիս։ Այդպիսի զրույցներից մեկի ժամանակ, օրինակ, ներկող բանվոր Ժ. Կիչիկյանը արեց մի շատ պարզ առաջարկություն. նա ասաց.

— Մեզ մոտ երբեմն խոտանում, կամ ցածրորակ արտադրանք են համարում արդեն պատրաստի, ներկված մահուդը նրա համար, որ լվանալուց հետո այն թողնում է ներկը։ Ասում են, որ վատ է ներկված։ Ես կարծում եմ, որ այդ միայն ներկելուց չի կախված։ Ապա փորձենք ներկելուց հետո լվացումը կատարել ինչպես հարկն է, կտեսնենք, թե որքան կպակասի ցածրորակ համարվող արտադրանքի քանակը։

Որքան էլ որ պարզ էր բանվոր Կիշկինյանի այս առաջարկությունը, նրա կիրառումը իրոք որ մեծ արդյունքներ տվեց։

Ահա այսպես Մահուդի ֆաբրիկայում ագիտատորները հետևողականորեն, ամեն օր, ամեն ժամ պայքարում են բարձրորակ արտադրանք տալու, Ալեքսանդր Չատկիխի հետ տեղի ունեցող սոցիալիստական մրցությունից պատվով դուրս գալու համար։ Եվ այդ պայքարը գնալով ավելի ու ավելի փայլուն արդյունքներ է տալիս։ Ֆաբրիկայում այժմ կա բարձրորակ արտադրանքի 28 բրիգադա, որոնցից 10-ը տալիս են միայն առաջին տեսակի արտադրանք, իսկ մյուսների տված արտադրանքից առաջին տեսակի է 97—99 տոկոսը։

Գ. ԱՐԾՐՈՒՆԻ

—○—

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐ

## ԿՈՍՏՐՈՄԱՅԻ ԱՇԽԱՐՀԱՀՌՉԱԿ ԿՈՎԵՐԸ

Կոստրոմայի մարզի «Կարավայեվո» սովխոզը Սովետական Միության մեջ և աշխարհում հռչակված է իր առատ կաթ տվող կովերով։ Այդտեղ սովետական անասնաբույծները, միչուրինյան բիոլոգիայի սկզբունքները կիրառելով անասնաբուծության բնագավառում, ստացել են կովերի ամենաարդյունավետ ցեղն աշխարհում։ «Կոստրոմյան» հռչակավոր ցեղն է դա, որի հատկություններին և առհասարակ այդ զարմանալի տնտեսության մեջ տիրող կարգ ու կանոնին ծանոթանալու նպատակով «Կարավայեվո» են գալիս մեր Մեծ Միության բոլոր ռեսպուբլիկաներից, ինչպես նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրներից անասնաբույծներ, գիտնականներ, կոլխոզնիկներ, լրագրողներ։

«Կոստրոմյան» ցեղը, ինչպես ասացինք, աշխարհում ամենաարդյունավետ ցեղն է։ Սովետական մարդիկ ընդամենը 10—15 տարվա ընթացքում տեղական անասուններից ստացան կովերի այնպիսի ցեղ, որն իր հիանալի հատկություններով իր հետևում է

թողնում ամերիկյան, շվեյցարական, հոլանդական, գերմանական անասունների բոլոր ցեղերը։ «Կարավաևոյում» առանձին ռեկորդիստականներ չեն աճեցնում միայն։ Մեր մարդիկ այնպես են կազմակերպել անասունների խնամքը, որ տնտեսության ամբողջ նախիրն է ռեկորդային կաթնատվության հասել։ Այսպես, արտասահմանի ամենից շատ հռչակված ֆերմաներից «Կոնտինենկում» (ԱՄՆ) 81 կովից մեկ տարում միջին հաշվով ամեն կովից ստացել են 247 կգ. յուղ։ Նույն ԱՄՆ-ի Օրեգոն նահանգի մյուս հռչակված ֆերմայի 150 կովերից յուրաքանչյուրից ստացված է 218 կգ. յուղ։ «Կարավաևո» սովխոզի 250 կովերի յուրաքանչյուր կովից մեկ տարում ստացվել է 335 կգ. յուղ։

Ինչպիսի՞ սի կովեր տեսա ես «Կարավաևոյում» և առհասարակ Կոստրոմայի մարզի ֆերմաներում։ Դեռ հեռվից այդ ֆերմաների անասուններն աչքի են ընկնում իրենց վիթխարի մարմնով և ահագին՝ կրծքով։ Մեր տեղական կովերը միջին հաշվով կշռում են 250—300 կիլոգրամ։ Բայց ես «Կարավաևոյում» երինջներ տեսա, որ 2—3 անգամ խոշոր են մեր կովերից։ Ընդամենը երեք տարեկան են այդ տնտեսության անասուն-



ներից «Մուխան», «Նիգրոլը», «Լիզան», «Կարինան», բայց նրանցից առաջինը կշռում է 720 կգ., երկրորդը՝ 752 կգ., երրորդը՝ 765 կգ. չորրորդը՝ 800 կգ.։ Ես այնտեղ անհավատալի մեծության կովեր տեսա, որոնց կենդանի կշիռը հասնում է 900—950 կիլոգրամի։ Հիսուն փթանոց կովեր դուք տասնյակներով կգտնեք այդ տնտեսությունում։ Իսկ հորթե՞րը... Տնտեսության ավագ զոոտեխնիկ Ս. Ի. Շտեյմանը մեզ ցույց տվեց իր աճեցրած «հորթերին»։ Ապակեպատ վերանդայի նման տիրուն շենքերում շարքով կապված էին կլորիկ մարմնով, փայլուն ողորկ մազերով, հաստավիզ ցուլերը։

— Ահա մեր հորթերը,— ասաց Ստանիսլավ Իվանովիչը ժպտալով։

18—20 փթանոց այդ ահագին անասունները այս տարվա հորթեր էին։ Սովխոզի հորթերի միջին կշիռը հասել է 3 ամսական հասակում՝ 117 կիլոգրամի, 6 ամսական՝ 216 կիլոգրամի, 9 ամսական՝ 302 կիլոգրամի, 1 տարեկան՝ 385 կիլոգրամի։ Ցուլիկներից «Կլինը» մեկ տարեկան հասակում կշռում էր 466 կգ., իսկ «Կորալլը»—473 կիլոգրամ։ Այդ արդեն մի խոշոր եզի կշիռ է։

Ասացի, որ այդ ցեղի կովերը աչքի են ընկնում նաև իրենց արտասովոր մեծության

կուրծերով։ Սովխոզը շրջապատված է փարթամ մարգագետիններով և հատկապես արածացնելու համար ցանված վիկայի, երեքնուկի, կորնգանի ցանքերով։ Գոմերից քիչ հեռու մերձվոլգյան ծով կանաչի աշխարհն է սկսվում։ Բայց ես գոմերի մոտ շատ կովեր տեսա, որոնց կերակրում էին հնձված թարմ կանաչով։

— Ինչո՞ւ իրենք չեն արածում,— հարցրի ես։

— Չեն կարողանում հասնել կանաչին, քայլել չեն կարողանում. մի կուրծերին նայի՛ր,— պատասխանեց ինձ ուղեկցող գյուղատնտեսական գիտությունների դոկտոր Վ. Շահումյանը։ Նա մշակել է կովի կուրծի զարգացման տեսությունը։ Սովխոզի հմուտ, տաղանդավոր կթվորները, որոնք գրեթե բոլորն էլ Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ են (սովխոզը 28 Հերոս ունի), սիստեմատիկ կերպով մշակում, զարգացնում են կովերի կուրծը, պտուկները,— լվանում են, շփում, մասաժ անում և բոլոր միջոցներով աշխատում են մեծացնել, լայնացնել, զարգացնել կաթ արտադրող այդ գործարանը։

«Կարավայեվոյում» շատ առատ են կերակրում իրենց կովերին։ Կովն այնտեղ օրե-



կան ուտում է 100—140 կիլո զանազան կերեր— ճակնդեղ, կարտոֆիլ, քուսպ, ալյուրի շփոթ, կորնգան, ջրի տեղ օրական 4—5 դույլ ճակնդեղի ածուցք է խմում։ Դրանից կովը սաստիկ փքվում է։ Տնտեսության շնորհալի կթվորները կարողանում են այնպես անել, որ այդ կերը ոչ թե ճարպ դառնա, այլ կաթ։ Օրական 4—5 անգամ շատ վարպետությամբ կթելով, կուրծը մաժելով, կթելիս կովի համար այնպիսի պատրանք ստեղծելով, թե իբր իրեն ոչ թե կթում են, այլ իր հորթն է ծծում, այդպիսի միջոցներով կթվորը կարողանում է առավելագույն չափով կաթ քամել կովից և նրա կաթնատվությունը զարգացնել, հասցնել անհավատալի չափերի։

Իսկապես անհավատալի կթվա, եթե ասեմ, որ այդ տնտեսությունում խոտանում են և նախիրից հեռացնում այնպիսի կովերի, որոնք իրենց կաթնատվությամբ մեզ մոտ կարող էին ռեկորդիստկա համարվել։ Այս տարի ես եղա Սիսիանի Բարձրավան գյուղի կոլխոզի ֆերմայում։ Այնտեղ կոլխոզը վերջին տասը տարում յուրաքանչյուր կովի տարեկան միջին կաթնատվությունը 600 լիտրից բարձրացրել է 900-ի։ Բայց «Կարավայեվոյում» տարեկան 4.000 լիտրից

պակաս կաթ տվող կովեր հազվագյուտ են, դրանք էլ կամ առաջին անգամ ծնած երինջներ են, կամ պահվում են բարձր յուղայնության համար։ 10 ամսում սովխոզի կովերի միջին կաթնատվությունը հասել է 6.310 կիլոգրամի յուրաքանչյուր կովից։

Քսան տարի առաջ սովխոզում նույն անասուններն են եղել, ինչ Կոստրոմայի մարզի գյուղերում։ Այն ժամանակ սովխոզի կովերը տարեկան տալիս էին 1.800—2.000 լիտր կաթ։ 1932 թվին նախրի մեջ կար միայն մեկ կով, որը տալիս էր 7000 կգ. կաթ և 2 կով, որոնք 5—6 հազար լիտր կաթ էին տալիս։ 8 տարվա ընթացքում հիանալի խնամքը, կերակրումը, կուրծի մշակումը, մետիզացիան անհավատալի արդյունք տվին։ 8 տարի հետո, 1940 թվին սովխոզի նախիրի մեջ կար 118 կով, որոնցից ամեն մեկը 6.000 կիլոգրամից ավելի կաթ էր տալիս, իսկ 8.000 կիլոգրամից ավելի կաթ տվող կովերի թիվը հասել էր 54-ի։

Բայց մեր զարմանքն ու հիացմունքը իր գագաթնակետին հասավ, երբ ծանոթացանք սովխոզի լավագույն կովերին։ Ահա դրանք. «Վեխան» 10 ամսում տվել է 9.131 կլգ. կաթ, «Մոշչնայան»—10.921 կգ., «Բլագոդատը»—11.768 կգ., «Նիտկան»—12.908



կգ., «Լենիվայան»—13.200 կգ., «Պոսլուշնիցա 2-րդը»—14.115 կգ։ «Օպիտնիցա» կովը 11 տարում 100 տոննա կաթ է տվել, իսկ «Լենիվայան»—96 տոննա։ Դրանցից առաջինը տվել է 3.840 կգ. յուղ, երկրորդը— 4.300։ «Սխեմա» կովը 10 տարում տվել է 4.829 կգ. յուղ, կամ տարեկան միջին հաշվով 30 փութ։

Ինչպե՞ս են Կոստրոմայում ստացել անասունների այդպիսի արդյունավետ ցեղ։

Կա այն սխալ կարծիքը, որ բավական է ցեղական ցուլեր ունենալ և նախիրը կբարելավվի։ Ես տեսա «Կարավայեվոյի» ցուլերը. նրանք լոռու մեր ցուլերից լավ չեն։ Հարցը միայն ցուլը չէ։ Մեծ Միչուրինի ուսմունքը զարգացնող Տ. Դ. Լիսենկոն գտնում է, որ լավ խնամքի դեպքում ոչ ցեղական անասունները հիանալի արդյունք կտան, իսկ ցեղական անասունները վատ խնամքի դեպքում ավելի քիչ արդյունավետություն կունենան, քան տեղական անասունները։ Անասունների ցեղը բարելավելու գործում փոքր դեր չունեն ազնվացեղ ցուլերը։ Բայց Լիսենկոն շեշտը դնում է ոչ թե ցեղը ցուլերով բարելավելու, այլ խնամքի պայմանները փոխելու միջոցով բարելավելու վրա։ Նա ուղղակի ասում է. «Ընտանի կենդանիների

արդյունավետության բարձրացման, գոյություն ունեցող ցեղերի բարելավման և նոր ցեղերի ստեղծման հիմքը կազմում են **կերերը և խնամքի պայմանները** (ընդգծումը մերն է։ Վ. Ա.)։

Հենց այդ ճանապարհով էլ ստեղծվել է «Կոստրոմյան» հռչակավոր ցեղը։ Վ. Հ. Շահոմյանը «Կարավայեվո» սովխոզի դիրեկտոր եղած ժամանակ 11 տարի շարունակ մի հիմնական հոգս է ունեցել՝ առատ, անընդհատ, բազմատեսակ կերերով ապահովել անասուններին։ Նա սկզբունք է ընդունել՝ ուտեցնել անասունին ինչ որ նրա «սիրտն ուզի» և ինչքան որ ցանկանա։ Նա անասուններին ահռելի քանակությամբ կեր էր տալիս։ Ահա յուրաքանչյուր կովի մեկ տարվա կերը (արածելը չհաշված).

Կարտոֆիլ 650 կիլոգրամ,

| | | |
|---|---|---|
| Ճակնդեղի չոր քուսպ | 480 | կիլոգրամ, |
| Տկուցք | 4800 | » |
| Սիլոս | 3000 | » |

Կոնցենտրատներ (քուսպ, ալյուր, ձավար և այլն)—2000 կգ.

| | |
|---|---|
| Խոտ | 2000 կգ. |

Ընդամենը մոտ 14 տոննա։

Կերի այդպիսի ահռելի քանակություն ապահովելու նպատակով նա Վոլգայի ձախ



ափին վեց-յոթ հարյուր հեկտար թփուտներ է արմատահան անել տվել, չորացրել են ճահիճները, հերկել են վատ արոտները և այդ բոլոր տարածությունները ծածկել կերաբույսերի ցանքերով։

Վ. Շահոմյանն այսպիսի սկզբունք ունի. երբ ասում են կովը կշտացավ, այդ նշանակում է նա կշտացավ միայն **մի տեսակ** կերից, օրինակ՝ խոտից։ Հապա փորձեցեք խոտից կշտանալուց հետո մի քանի կարտոֆիլ տա՞լ— անմիջապես կուտի։ Հետո տվեք մի քիչ քուսպ— այդ էլ կուտի, տվեք մի քիչ թթու (սիլոս)— կուտի ախորժակով և ախորժակը կբացվի։ Տվեք գազար, նորից կուտի։ Կերերը տարբեր պիտի լինեն, բազմազան։ Դա լավ է ոչ միայն նրա համար, որ կովը շատ ուտի, այլև նրա համար, որ անասունի օրգանիզմը բազմատեսակ սնունդ և վիտամիններ ստանա։

Առատ կերը հսկայական ազդեցություն է ունենում կովի օրգանիզմի և կաթնատվության վրա։ Սովորական, 400 կիլո կշռող կովերի սերունդները այժմ կշռում են 8—9 հարյուր կիլո։ 1932 թվին յուրաքանչյուր կովի տրվում էր 2.790 կերի միավոր և ստացվում էր 2.626 կիլոգրամ կաթ։ Այն ժամանակ կովերի միջին կշիռը 400 կիլոգրամ

էր։ 1940 թվին ամեն կովին տրվող կերի քանակը բարձրացավ 6.225 միավորի, դրան համապատասխան էլ կաթնատվությունը բարձրացավ 6.310 կիլոգրամի, իսկ կովերի միջին կենդանի քաշը՝ 649 կիլոգրամի։ 1946 թվին յուրաքանչյուր կովին տրվող կերի քանակը իջեցվեց 5.720 միավորի, դրան համապատասխան էլ կովերի միջին կաթնատվությունն իջավ 5.165 կիլոգրամի, իսկ կենդանի քաշը 621 կիլոգրամի։ Սրանից պարզ երևում է կերի (և ոչ թե ցեղի) վճռական դերը անասունների մթերատվության բարձրացման գործում։

Մենք ցույց տվինք միայն երկու ֆակտորի— կերակրելու և կթելու դերը կովերի մթերատվության և նոր ցեղի առաջացման գործում։ Բայց այստեղ գործ են տեսել նաև այլ ֆակտորներ— լավ ցուլերը, պայքարը հիվանդությունների դեմ, խնամքը, մաքրությունը, գոմերում տիրող կարգ ու կանոնը։ Սովխոզի գոմերում մեխանիզացիայի է ենթարկված շատ պրոցեսներ— կեր հասցնելու, աղբը տեղափոխելու, անգամ կովերին ջուր տալու աշխատանքը. յուրաքանչյուր կովի առաջ փոքրիկ գուռ կա և ջրի ծորակ։ Հենց ծարավեց— դնչով սեղմում է գռի հատակին, ծորակը ավտոմատիկ կերպով բաց-



վում է և ջուրը լցվում գուռը։ Կշտացավ, դունչը քաշեց— ծորակը փակվում է։

Մեկնելուցս առաջ ես հարցրեցի Վ. Շահոմյանին և Ս. Շտեյմանին.

— Ի՞նչ եք կարծում, մեզ մոտ՝ Հայաստանում՝ կարո՞ղ ենք ձեր կովերի նման կովեր ստանալ։

Երկուսի պատասխանն էլ գրեթե նույն միտքն ունի.

— Անկասկա՛ծ։ Դրա համար հարկավոր է ոչ թե հույսը դնել ցեղական ցուլերի վրա, այլ պետք է հիմնովին փոխել անասունների կերի ու խնամքի պայմանները։ Մեր մեթոդով յուրաքանչյուր կոլխոզ կարող է 10—15 տարում անասունների նոր ցեղ ստանալ, այնպիսի ցեղ, որին պատկանող կովերը երկու-երեք անգամ խոշոր կլինեն ձեր ֆերմաների ներկայիս կովերից և հինգ-տասն անգամ ավելի կաթ կտան, քան դուք ստանում եք այժմ։

Վ. ԱՆԱՆՅԱՆ

—O—

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄԸ

## ՋՐԱՅԻՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ

### (Թվեր և փաստեր)

*Մինչև Սովետական կարգերի հաստատումը Հայաստանում գյուղատնտեսությունն անկման վիճակում էր գտնվում։ Հայկական գյուղն ապրում էր անուրախ, աղքատ կյանքով։ Հողը գտնվում էր խոշոր հողատերերի ձեռքում։ Նոր, ոռոգելի հողերի տարածություն նվաճելու համար պայքար չէր տարվում, այդ մասին նույնիսկ չէին էլ մտածում։*

*Սովետական կարգերի հաստատմամբ Հայաստանում սկսվեց երկրի վերածնունդը։*

*«Հայաստանում սովետական իշխանություննստիպված էր ամեն ինչ սկսելու նորից։ Պետք էր ստեղծել արդյունաբերություն,*



*ջուր տալ չորացած հողերին և վերականգնել կատարյալ անկման հասած Հայաստանի գյուղատնտեսությունը։ Այդ բանի համար անհրաժեշտ էր նախ և առաջ ստեղծել լայն էներգետիկ բազա և ընձեռնել ոռոգման ջրանցքների կառուցման գործին։ Այդ պատճառով էլ Հայաստանում ստալինյան հնգամյակների հիմքում դրվեցին երկու վճռական պրոբլեմներ— ոռոգում և էլեկտրիֆիկացիա»։ (Գ. Ա. Հարությունյան)։*

*Սովետական իշխանության օրոք տարեցտարի ընդարձակվում են ոռոգման շինարարության աշխատանքները։ Ոռոգման աշխատանքների կենսագործման շնորհիվ ջրովի տարածությունը 1945 թվի վերջում հասավ 203.000 հեկտարի, որը հնարավորություն ստեղծեց արմատավորելու նոր, նպատակային տեխնիկական կուլտուրաներ— ծխախոտ, բամբակ, զարգացնել խաղողաբուծությունը և այգեգործությունը, միաժամանակ նշանակալի չափով ավելացավ հացահատիկային ցանքերի տարածությունը, բարձրացավ բերքատվությունը։*

Ռեսպուբլիկայում ոռոգման շինարարությունն է՛լ ավելի մեծ թափ ստացավ հայրենական պատերազմյան ստալինյան հնգամյակի ընթացքում։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի Օրենքում ասված է.

«Շահագործման հանձնել Ստալինի անվան, Ներքին Զանգվի, Նորքի, Գառնիի ջրանցքները։ Ընդլայնել Արարատյան դաշտավայրի ոռոգման աշխատանքները։ 1946—1950 թ. թ. ապահովել ոռոգելի տարածությունների աճը 23,5 հազար հեկտարով»։

Ստալինյան նոր հնգամյակի ընթացքում մեր ռեսպուբլիկայում ոռոգման շինարարական աշխատանքների վրա ծախսվելու է 90 միլիոն ռուբլի։ 1950 թվականին ոռոգվող հողերի տարածությունը կհասնի 226.500 հեկտարի։

Ռեսպուբլիկայում նախատեսված ջրաշինարարական ընդարձակ ծրագրերը կենսագործելու համար խոշոր դեր է խաղալու Սևանա լիճը, որի ջրերի մեծ պաշարները մինչև այժմ անօգտագործելի են եղել։ Արդեն կառուցված և նոր կառուցվելիք բազմա-



թիվ ջրանցքների միջոցով Սևանա լճի ջրերը կհոսեն դեպի Հայաստանի անջրդի, անմշակ հողերը՝ դրանք վեր ածելով ծաղկած այգեստանների, հացի շտեմարանների։

Նոր ջրանցքների ու ջրային սիստեմների կառուցմամբ ոռոգման աշխատանքների համար լայնորեն օգտագործվում են նաև ռեսպուբլիկայի գետերի ջրերը։ Ջրանցքների շինարարությունը մեր ռեսպուբլիկայում դարձել է աշխատավորների հարազատ գործը։

Ահա ստալինյան նոր հնգամյակի նորակառույց ջրանցքներից և ջրային սիստեմներից մի քանիսը։

## ՆԵՐՔԻՆ ԶԱՆԳՎԻ ՋՐԱՆՑՔԸ

Ստալինյան նոր հնգամյակի կարևորագույն կառուցումներից է հանդիսանում Ներքին Զանգվի ջրանցքի շինարարությունը։ Ջրանցքի ջրերը կկենդանացնեն 5.000 հեկտար ամայի հողեր։ Բացի այդ, ջրանցքը ջուր կտա ներկայումս սակավաջուր Քասախ գետով ոռոգվող 4.000 հեկտար հողերին։ Քասախի ավելացած ջրերը կօգտագործվեն Աշտարակի հողերի ոռոգման համար։ Ներքին Զանգվի ջրանցքով ոռոգվող տերիտորիայում նոր սովետական քաղաքացիների

համար կկառուցվեն ավաններ։ Այդ հողերի վրա կազմակերպված է նուշի առաջին սովխոզը Հայաստանում։ Ընթացիկ տարում արդեն ջուրը բաց է թողված այդ հողերը ոռոգելու համար։ Ներքին Զանգվի ջրանցքի շինարարության վրա աշխատում են Էջմիածնի, Աշտարակի, Ապարանի և Բերիայի ռայոնի կոլխոզնիկները։ Նախատեսված է ջրանցքի շինարարությունն ամբողջովին ավարտել այս տարվա վերջին։

## ՆՈՐՔԻ ՋՐԱՆՑՔԸ

Հայրենական պատերազմի տարիներին Երևանի աշխատավորները սկսեցին կառուցել Նորքի ջրանցքը։ Ջրանցքի առաջին 10 կիլոմետրերը արդեն կառուցված է և ջուրը բաց է թողնված քաղաքամերձ կոլխոզների և արդյունաբերական ձեռնարկությունների օժանդակ տնտեսությունների հողերը ու Երևան քաղաքի այգիները ոռոգելու համար։

## ԱՐՓԱ ԼՃԻ ՋՐԱՄԲԱՐԸ

Ստալինյան նոր հնգամյակի նորակառույցների առաջնահերթ կառուցումներից մեկը հանդիսանում է Արփա լճի լճային ջրամբարը, մոտ 100 միլիոն խորանարդ մետր ջրածավալով։ Այդ ջրամբարը, Ախուրյան



գետի հոսանքի կարգավորմամբ, պետք է ավելացնի գոյություն ունեցող Շիրակի ոռոգման սիստեմի ջրապահեստավորումը, ինչպես և ոռոգի Թալինի շրջանի 12.000 հեկտար հողերը։

## ԹԱԼԻՆԻ ՋՐԱՆՑՔԸ

Թալինի ջրանցքը հանդիսանում է ստալինյան նոր հնգամյակում Հայաստանում ջրային տնտեսության ամենախոշոր կառուցումը։

Ջրանցքի կառուցմանը մասնակցում են Թալինի, Աղինի, Արթիկի շրջանների կոլեկտիվները։ Ջրանցքի երկարությունը իր ճյուղավորումներով 60 կիլոմետր է։ Թալինի ջրանցքի թողարկմամբ ոռոգվող տերիտորիայում կստեղծվեն տասնյակ նոր բնակելի վայրեր։ Այդ ջրանցքով ոռոգվող հողերի վրա կաճեցվեն խաղողի և մրգի այգիներ, ծխախոտի և շաքարի ճակնդեղի պլանտացիաներ։

## ԼՈՌՎԱ, ԿՈՏԱՅՔԻ ԵՎ ԱՅԼ ՋՐԱՆՑՔՆԵՐ

Ավարտվում են Կոտայքի ջրանցքի շինարարական աշխատանքները. նա կոռոգի Կոտայքի շրջանի կոլխոզների մոտ 1000 հեկտար հողերը։

Ավարտվում է նույնպես Գյառնու ջրանցքը։ Այդ ջրանցքի տակ կավելանան նույն Կոտայքի ռայոնում խաղողի այգիների և ծխախոտի պլանտացիաների տարածությունները։ Ալավերդու և Ստեփանավանի շրջանների կոլխոզնիկները կառուցել են Լոռվա մագիստրալ ջրանցքը՝ 4.000 հեկտար տարածություն ոռոգելու համար։

Նոյեմբերյանի և Ալավերդու շրջաններում կառուցվում են մի շարք ջրհան կայաններ, որոնց շնորհիվ լեռների ստորոտներում կաճեցվեն մրգատու այգիներ։

Զանգվի ջրերը, Ծիծեռնակաբերդի ջրհան կայանով առավելագույն բարձրության հասնելով, կապահովեն Դալմայի կոլխոզային հողերի ոռոգումը։

---

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

### ԱՊՐՈՒՄ 1950 ԹՎԱԿԱՆԻ ՀԱՇՎԻՆ

Ռումինիայի ազատագրման 5-րդ տարեդարձի պատվին երկրում ծավալված սոցիալիստական մրցությունը օր-օրի ընդգրկում է նորանոր արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվներ։ Մեծ խանդավառությամբ են աշխատում ածխահատները։ Աշխատանքի բարձր արտադրողականության համար մղվող պայքարի նախաձեռնող հանքափոր Լյուդվիկ Պոպի օրինակով, որը դեռևս օգոստոս ամսին կատարեց իր 1949 թվի նորման, ածխահատների մեջ ծավալվում է ածխի հանման տարեկան պլանը ժամկետից շուտ կատարելու շարժումը։

Լուպեն հանքահորի բանվորները, վերջերըս կայացած իրենց ժողովում պարտավորություն ստանձնեցին հավասարվել առաջավորներին։ Այժմ արդեն ոչ թե անհատ հանքափորներ, այլ շատ բրիգադաներ սխ-

տեմատիկ կերպով գերակատարում են արտադրական ծրագիրը, պլանից դուրս երկրին տալով հազարավոր տոննաներածուխ։

## ԱՇՆԱՆԱՑԱՆԻ ՏԱԿ ԵՂԱԾ ՏԱՐԱԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՃԸ

Մոտ օրերս Լեհաստանը կսկսի աշնանացան հացահատիկների ցանքը։ Այս տարի աշնանացանի տարածությունները երկրում կավելանան 300 հազար հեկտարով։ Այս աշնանը ընդամենը ցանվելու է 6.150 հազար հեկտար։ Զգալիորեն կավելանան ցորենի հիմնական տարածությունները։

Պետությունը նոր, լուրջ ներդրում է կատարում գյուղատնտեսության բերքատվության և մթերատվության հետագա բարձրացման գործում։ Չքավոր և միջակ գյուղացիական տնտեսությունները ցանքի համար կստանան 39 հազար տոննա տեսակավոր և սելեկցիոն սերմացու, 590 հազար տոննա հանքային պարարտանյութ և 1 միլիարդ 260 միլիոն զլոտ վարկ։ Աշնանային ցանքի ժամանակ չքավոր և միջակ տնտեսությունները կսպասարկվեն մոտ երեք հազար վոլոստային մեքենայական կենտրոնների կողմից, որոնց պարկերը լրացվում են նոր մեքենաներով և ինվենտարով։



## ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ԴՊՐՈՑ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻՆ

Հին Բուլղարիայում բարձրագույն կրթությունը մատչելի էր միայն ազնվականների և քաղաքային ու գյուղական բուրժուազիայի երեխաներին։ Այժմ Բուլղարիայի ժողովրդական ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատությունները դրված են աշխատավորների ամենալայն խավերի տրամադրության տակ։

Սոֆիայում բացվել են գյուղատնտեսական ակադեմիան և թատերական բարձրագույն ուսումնարանը, Ռուսեում — բարձրագույն տեխնիկական ուսումնարանը, Պլովդիվում պետական համալսարանը՝ գյուղատնտեսական և բժշկական ֆակուլտետներով, իսկ մյուս քաղաքների բարձրագույն ուսումնական հաստատություններում նոր ֆակուլտետներ։

Բուհերում ստեղծվել է ասպիրանտուրա, վերանայվել են ուսումնական ծրագրերը և մտցվել սովետական բուհերի ծրագրերից առնված բաժիններ։ Դա զգալիորեն բարելավեց դասավանդման որակը։ Այս տարի լույս ընծայված դասագրքերի թվում կան սովետական հեղինակների ավելի քան 100 դասագրքեր։

## ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ

Ժողովրդա-դեմոկրատական Չեխոսլովակիայում աշխատավորների վարձատրվող հանգստի իրավունքը ապահովվում է կոնստիտուցիայով։ Պետությունը մեծ միջոցներ է ծախսում սոցիալական ապահովագրության և սանատորիաներում ու հանգստյան տներում աշխատավորների հանգիստը կազմակերպելու համար։ Տարեց-տարի աճում է ձրիաբար կամ մասնակի վճարով պրոֆմիութենական և գերատեսչության հանգստյան տներում ու սանատորիաներում հանգստացող աշխատավորների թիվը։ 1946 թվականին հանգստյան տներում ու սանատորիաներում եղել են 35 հազար աշխատավորներ։ 1947 թվականին՝ 81 հազար, անցյալ տարի՝ 130 հազար, իսկ 1949 թվականին հանգստյան տներում ու սանատորիաներում իրենց արձակուրդը անցկացրին 190 հազար աշխատավորներ։

Ընթացիկ տարում առողջապահության և սոցիալական ապահովագրության գծով պետական բյուջեով հատատված է 12 միլիարդ 800 միլիոն կրոն։ Սա կազմում է բյուջեյով կատարվող պետական բոլոր ծախսերի ավելի քան 15 տոկոսը։



## ՀԱՑԻ ԵՎ ԱԼՅՈՒՐԻ ՔԱՐՏԵՐԻ ՎԵՐԱՑՈՒՄԸ ՉԵԽՈՍԼՈՎԱԿԻԱՅՈՒՄ

Չեխոսլովակիայի կառավարությունը որոշել է սույն թվի հոկտեմբերի 1-ից վերացնել հացի և ալյուրի քարտերը։ Հացի գինը մնում է անփոփոխ, չնչին չափով բարձրացվում են ալյուրի և ալյուրից արտադրվող որոշ մթերքների գները։ Կառավարությունը միաժամանակ որոշել է ալյուրի և նրանից պատրաստվող մթերքների գները որոշ չափով բարձրացնելու պատճառով ամսական 40 կրոնով ավելացնել ընտանիքավոր քաղաքացիների երեխաներին տրվող նպաստները և 12 կրոնով՝ թոշակառուներին տրվող նպաստները։

Հացի և ալյուրի քարտերը վերացնելու կապակցությամբ ռադիոյով հանդես եկավ պրեմիեր-մինիստր Ա. Զապոտոցկին, որը հայտարարեց, թե չեխոսլովակյան կառավարությունը մոտիկ ժամանակներս հնարավորություն կունենա ավելացնել նաև մսի և մի քանի այլ մթերքների մատակարարման նորման, իսկ հետագայում միանգամայն վերացնել մատակարարման քարտային սիստեմը։

## ԿԱՊԻՏԱԼԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

### ՑԱՆԿԱՆՈՒՄ ԵՄ ԼԻՆԵԼ ՈՐԵՎԷ ԲԱՆ...

Երիտասարդությունը— ազգի ապագան է։ Սովետական Միության մեջ աճում է առողջ և ուժեղ, կրթված, կուլտուրական երիտասարդ սերունդ, որը կոմունիզմ է կառուցում։ Իրենց լուսավոր ապագան են ստեղծում նրանց հասակակիցները ժողովրդական դեմոկրատիայի երկրներում։ Նրանց շարքերում տեղ չունեն վհատությունը, թերահավատությունը, անտարբերությունը։ Յուրաքանչյուրը գիտի, որ իր ապագան իր սեփական ձեռքումն է և բոլոր ճանապարհները բաց են նրա առջև։

Այդպես չի ապրում, ամենևին այդպես չի ապրում կապիտալիստական երկրների երիտասարդությունը։ Փարիզի «Պարի պրեսս-էնտրանսիժան» թերթը վերջերս մի երկար շարք հարցերով դիմել է 1500 երիտասարդ ֆրանսիացիների։ Այդ հարցերին պատասխանել են թե բանվորներ, թե ուսանողներ, թե արհեստավորներ, և թե գյուղացիներ ու ծառայողներ։



— Հավատում ե՞ք արդյոք ապագային, — հարցրել է թերթը։

— Ոչ,— պատասխանել են պատանիների և աղջիկների 28,3 տոկոսը։

— Հավատում ե՞ք արդյոք ինքներդ ձեզ։

— Ոչ,— հայտարարել են երիտասարդների 45,4 տոկոսը։

— Ունե՞ք արդյոք որևէ իդեալ։

— Ոչ,— ասել են հարցաքննվողների 52,9 տոկոսը։

Նշանակում է, մոտավորապես ամեն մի երրորդ երիտասարդ ֆրանսիացին արդեն հուսահատվել է, որ նրան ինչ որ լավ բան կարող է սպասել։ Յուրաքանչյուր երկրորդը —չի հավատում ինքն իրեն և ոչ մի բանի չի ձգտում... Մի՞թե կարող է դրանից ավելի պերճախոս դատավճիռ լինել երկրում տիրող հասարակարգի նկատմամբ։

Իսկ այն քչերը, որոնք հավատացել են, որ ունեն իրենց իդեալը, ինչի՞ մասին են երազում։

— Լինել որևէ բան,— այսքան պարզ ու բազմանշանակալի կերպով պատասխանել պատանիների և աղջիկների 13 տոկոսը։

Լինել գոնե որևէ բան... այս է մեր ժամանակի բազմաթիվ երիտասարդ ֆրանսիացիների դառն ու անիրականանալի երազը։

# ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ՀԻՄՔԵՐԸ ԽԱՐԽԼՎՈՒՄ ԵՆ ԳԱՂՈՒԹՆԵՐՈՒՄ

Արդի միջազգային դրությունը բնութագրվում է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի, այդ թվում և գաղութային սիստեմի ճգնաժամի աստիճանաբար սրումով։

Երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով իմպերիալիզմի հիմքերն է՛լ ավելի խարխլվեցին։ Սովետական Միությունը ջախջախեց ֆաշիստական Գերմանիային ու նրա սատելիտներին Եվրոպայում և վըճռական, մահացու հարված հասցրեց ճապոնական իմպերիալիզմին Հեռավոր Արևելքում։ Կապիտալիզմի սիստեմից անջատվեցին Արևելյան ու Հարավ արևելյան Եվրոպայի մի շարք երկրներ։ Բոլոր գաղութային ու կախյալ երկրներում սկսվեց ազգային-ազատագրական շարժման հզոր վերելք։

Ընկեր Ստալինը վաղուց է մատնանշել, որ ազգային շարժումն այնպիսի երկրներում,



ինչպես Չինաստանը և Հնդկաստանը համդիսանում է «շոդեմուրճի հարված իմպերիալիզմին»։

Այսօր այդ «շոդեմուրճը» Չինաստանում այնպիսի ուժով հարվածեց իմպերիալիզմին, որ նրա հիմքերը երերացին ամբողջ Ասիայում։

Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ժողովրդա-ազատագրական բանակի հարձակման հետևանքով ազգային-ազատագրական շարժումն այդ երկրում տանում է փայլուն հաղթանակ։

Ժողովրդական դեմոկրատիայի դրոշի ներքո արդեն միավորվել են 280 միլիոն բնակչություն ունեցող ընդարձակ տերիտորիաներ, ներառյալ երկրի համարյա բոլոր քաղաքական գլխավոր կենտրոնները, արդյունաբերական բազաները, նավահանգիստները և երկաթուղային կոմունիկացիաները։

Չինաստանի հնագույն մայրաքաղաք Բեյպինում ամենամոտ ժամանակում նախատեսվում է հրավիրել մի նոր քաղաքական կոնսուլտատիվ խորհուրդը, որը կստեղծի ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկա, նոր կենտրոնական դեմոկրատական կառա-

վարումթյուն՝ առանց ռեակցիոներների մասնակցության։

Խորհրդի հրավիրման նախապատրաստական կոմիտեի սեսիայում արտասանած իր ճառում Մաո Ցզե-դունը հատկապես ընդգծեց, որ չին ժողովուրդը հաղթանակը ձեռք է բերել իմպերիալիստների և ամենից առաջ ամերիկյան իմպերիալիստների դեմ մղած դաժան պայքարում, իմպերիալիստներ, որոնք քաղաքացիական պատերազմի երեք տարիների ընթացքում առավելագույն օգնություն են ցույց տվել գոմինդանյան ռեակցիոներներին այն նպատակով, որ Չինաստանը դարձնեն իրենց գաղութն ու ռազմական պլացդարմը՝ ընդդեմ Սովետական Միության և Ասիայի ժողովուրդների։

Չինաստանի օրինակը ամբողջ աշխարհին ցույց տվեց, որ ժողովուրդների գաղութային ստրկացման նպատակներով իմպերիալիստների ձեռնարկած ռազմական արշավանքները այժմ դատապարտված են լիակատար ձախողման։

Այդ պարզ կերպով երևում է և Վիետնամի փորձից։ Վիետնամում ռեսպուբլիկայի անկախությունը խեղդելու նպատակներով ֆրանսիական գաղութարարների և նրանց



անգլո-ամերիկյան հովանավորների արյունոտ արշավանքը հանգեցրեց երկարաձիգ ու ֆրանսիական իմպերիալիստների համար անհուսալի գաղութային պատերազմի։

Ֆրանսիական բանակն արդեն կորցրել է 140 հազար զինվոր և սպա, իսկ Վիետնամում մղվող պատերազմի դծով ֆրանսիայի ծախսերը կազմում են տարեկան մոտ 100 միլիարդ ֆրանկ։ Ֆրանսիական զորքերին հաջողվեց օկուպացնել ծովամերձ շրջանների միայն մի նեղ շերտ, որի վրայով անցնում է միակ երկաթուղագիծը, ֆրանսիական գաղութարարների կողմից զավթված տերիտորիայի սահմաններում գտնվում են միայն մի քանի խոշոր քաղաքներ 2 միլիոն բնակչությամբ։ Իսկ տերիտորիայի 90 տոկոսը 20 միլիոն բնակչությամբ գտնվում է Վիետնամի ռեսպուբլիկայի ձեռքում։

Վերջին ժամանակներս Վիետնամի ժողովրդա-ազատագրական բանակը անցել է ընդհանուր հարձակման և մի շարք լուրջ պարտություններ է պատճառել ֆրանսիական գաղութային զորքերին։ Վիետնամի ժողովրդա-ազատագրական բանակի կողմից ազատագրվել է 105 ամրացված կետ։ Վիետնամի ռեսպուբլիկան լուրջ հաջողություններ ունի իր տնտեսական շինարարության բնա-

դավառում։ 1948 թվականին, օրինակ, նրա արդյունաբերական արտադրանքը, որը վերաբազայավորվել է հեռավոր շրջաններում, 1947 թվականի համեմատությամբ աճել էր չորս անգամ։ Ռեսպուբլիկան իր համար արտադրում է ամեն տեսակի սպառազինություն, ամրապնդելով իր բանակը։

Իմպերիալիզմի հիմքերի խորտակումը գաղութներում երևում է նաև Ինդոնեզիայի օրինակով։ Ինդոնեզիայի ժողովուրդը հերոսաբար պայքարում է իր անկախության համար՝ ընդդեմ գաղութարարների միացյալ ուժերի։

Ռեսպուբլիկայի ազատագրման ժամանակից անցած չորս տարիների ընթացքում իմպերիալիստները ձեռք են առել նրան խեղդելու բոլոր միջոցները թե՛ ռազմական արշավանքները, թե՛ «խաղաղ համաձայնություններ», թե՛ «բարի ծառայությունների հանձնաժողով» ամերիկյան իմպերիալիստների գլխավորությամբ, և թե ծախու դործարք ինդոնեզյան բուրժուազիայի հետ։

Հոլլանդական գաղութարարները, Ամերիկյան Միացյալ Նահանգների կողմից ստանալով իրենց անհրաժեշտ ռազմական ու ֆինանսական օգնությունը, 1948 թվականի դեկտեմբերի 18-ին նոր ուխտադրուժ հար-



ձակում կատարեցին ինդոնեզյան ռեսպուբլիկայի վրա։

Ինդոնեզիայի ժողովուրդը և նրա ազատագրական բանակը դրան պատասխանեցին հոլլանդական գաղութարարների դեմ հերոսական զինված պայքար սկսելով։

Նույնիսկ Հոլլանդիայի բուրժուական մամուլը խոստովանեց հոլլանդական գաղութարարների և նրանց անգլո-ամերիկյան տերերի ինդոնեզյան ավանտյուրիայի սնանկությունը։

Հոլլանդական կառավարությունը շտապեց Միավորված ազգերի կազմակերպության այսպես կոչված հանձնաժողովի աջակցությամբ նոր գործարք կնքել դավաճաններ Խոտտայի և Սուկարնոյի հետ, որոնք պայքարող ինդոնեզյան ժողովրդի թիկունքում համաձայնվեցին ռեսպուբլիկայի տերիտորիան սահմանափակել միայն Ջոկյակարտա քաղաքով իր երկու միլիոն բնակչությամբ և ինդոնեզյան կղզիներում գտնվող ռեսպուբլիկայի մնացած ամբողջ տերիտորիան համաձայնվեցին հանձնել «Ինդոնեզիայի ֆեդերալ միացյալ նահանգներին»։ Ընդ որում, նրանք պարտավորվեցին օգնել հոլլանդական և ամերիկյան իմպերիալիստներին ինդոնեզյան ժողովրդի դիմադրությունը խեղդելու

իրենց «ազգային բանակի» ուժերով, բանակ, որն ստեղծելու համար նրանց օգնում են հոլլանդական ու ամերիկյան իմպերիալիստները։ Սակայն դավաճաններ Խատտան և Սուկարնոն չեն վայելում ինդոնեզյան ժողովրդի վստահությունը։ Ժողովուրդը վճռապես պաշտպանում է միասնական ժողովրդական ճակատը՝ Ինդոնեզիայի կոմունիստական պարտիայի գլխավորությամբ, որը մասսաներին կոչ է անում համառ կերպով պայքարել հանուն անկախ դեմոկրատական ռեսպուբլիկայի։

Լուրջ հաջողություններ ունի ժողովրդաազատագրական շարժումը նաև Բիրմայում, որտեղ Տակին Նուի մարիոնետային ռեժիմի դեմ հանդես են եկել Բիրմայի ապստամբված ժողովրդի և ապստամբված կարեններին միացյալ ուժերը։ Այդ փաստը նշանակում է անգլիական իմպերիալիստների պլանների ձախողումն, իմպերիալիստներ, որոնք փորձում էին կարեններին օգտագործել Բիրմայի ժողովրդի դեմ։

Ժողովրդա-ազատագրական ուժերը վերահսկում են Բիրմայի տերիտորիայի զգալի մասին, նրանք ազատագրված տերիտորիայում մտցրել են դեմոկրատական ռեֆորմներ,



և խստորեն պատժում են դավաճանական ռեակցիոն տարրերին։

Անգլիայի գաղութային կայսրության ճգնաժամի վառ ցուցանիշն է հանդիսանում Մալայայում տիրող դրությունը։ Անցյալ տարվա հունիսից անգլիական իմպերիալիստները դաժան պատերազմ են մղում մալայան ժողովրդի դեմ։

Ահա ինչպես է նկարագրում այդ պատերազմը ամերիկյան «Կրիսչեն Սայենս մոնիտոր» թերթի թղթակիցը.

«Պայքարի նետվեց մոտ 50 հազար մարդ-ոստիկանությունը և օժանդակ ջոկատները, բանակը, ռազմա-ծովային նավատորմը և ավիացիան... Կործանիչները գնդակներով և ռեակտիվ արկերով վնասում են ջունգլիների ապաստարանները։ Ռազմանավերը գնդակոծում են ափերի թաքստոցները... զորքերը ռմբակոծում, գնդացիրներով գնդակոծում ու հարձակումներ են կատարում խաղաղ բնակիչներ ունեցող գյուղերի վրա»...

Չնայելով ազատագրական շարժումը ճընշելու այդ դաժան միջոցներին, հակաիմպերիալիստական պայքարին մասնակցում են Մալայայի բոլոր իսկական հայրենասերները։ Ժողովրդա-ազատագրական բանակում կան տասնյակ հազարավոր մարդիկ։ Ամբողջ

անգլիական մամուլը Մալայայում անգլիական գաղութների դրությունը գտնում է շատ լուրջ։

Մալայայում և Բիրմայում տիրող դրությունը «համագործակցության երկրների», ինչպես կոչվում են բրիտանական կայսրության գաղութներն ու դոմինիոնները, պրեմիեր-մինիստրների լոնդոնյան կոնֆերանսի գլխավոր թեման էր հանդիսանում։

Այդ կոնֆերանսում անգլիական լեյբորիստական կառավարությունը գործարք կնքեց հնդկական կառավարության հետ։ Ազգային կոնգրեսի վերնախավը համաձայնվեց Հնդկաստանը պահպանել բրիտանական կայսրության կազմում, որպես «մի ռեսպուբլիկա, որի գլուխ է կանգնած անգլիական թագը»։ Ռեակցիան փորձում է Հնդկաստանը դարձնել Ասիայի հարավ-արևելքի և հարավային ծովերի երկրների ազգային-ազատագրական շարժման դեմ պայքարելու գլխավոր բազա։

Բնութագրելով այդ գործարքը, Հնդկաստանի կոմունիստական պարտիայի կենտրոնական կոմիտեն ժողովրդին ուղղված իր կոչի մեջ գրում է.

«Ներուն, ստորագրելով «ազգերի համագործակցության» լոնդոնյան պակտը, դավա-



ճանեց հնդիկ ժողովրդի շահերին և երկրի անկախությանն ու սուվերենությունը վաճառեց անգլո-ամերիկյան իմպերիալիստներին։ Նա այդ արավ, ելնելով հնդկական կապիտալիստների շահերից, որոնք վախեցել են կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ չինական ժողովրդա-ազատագրական բանակի հաղթական առաջխաղացումից և Բիրմայի, Մալայայի, Վիետնամի ժողովուրդների զինված պայքարից»։

Ջգտելով ապահովել անգլո-ամերիկյան իմպերիալիզմի առաջադրանքների կատարումը, հնդկական ռեակցիան շտեմնված արյունոտ տեռոր սկսեց երկրի բոլոր պրոգրեսիվ ուժերի դեմ, և ամենից առաջ, կոմունիստական պարտիայի ու պրոֆմիությունների դեմ։

Պրոֆմիությունների Համահնդկական կոնգրեսի համագումարի կազմկոմիտեի հաղորդագրության համաձայն, «Հնդկաստանի դեմոկրատական շարժման 25 հազար ակտիվ մասնակիցներ նետվել են բանտերը»։

Բայց, չնայելով տեռորին, ժողովրդական մասսաների պայքարը Հնդկաստանում բորբոքվում է օրը-օրին։

Բոմբեյում ու մյուս արդյունաբերական կենտրոններում տեղի ունեցան բանվորների

մասսայական ցույցեր, որտեղ պահանջվում էր ազատել կոմունիստներին։ Ոստիկանությունը գնդակոծել էր ցուցարարներին։ Հնդիկ զորքերին մինչև այժմ չի հաջողվել ճնշել գյուղացիական հզոր ապստամբությունը Տելինգանի նահանգում և Խայդարաբադ իշխանության մեջ, որտեղ ապստամբները հիմնել են ժողովրդական կոմիտեներ և կալվածատերերի հողը բռնագրավելով բաշխել հողազուրկ գյուղացիներին։ Այժմ նույնպիսի գյուղացիական ապստամբություններ են բռնկվել Հնդկաստանի խոշորագույն նահանգ Բենգալիայում։

Բոմբեյում պրոֆմիությունների համահնդկական կոնգրեսի համագումարի հրավիրումը, հակառակ ոստիկանական արգելքին ու ռեպրեսիաներին, Հնդկաստանի ազատագրության համար հերոսական պայքարը շարունակող բանվոր դասակարգի խոշորագույն հաղթանակը հանդիսացավ։

«Հնդիկ բանվորները գիտեն,— ասաց համագումարի կազմկոմիտեի կողմից իր տված



զեկուցման մեջ Ամիա Սենը,— որ նրանց սեփական ճնշողների դեմ մղվող պայքարը ամբողջ համաշխարհային կապիտալիզմի դեմ մղվող պայքարի մի մասն է հանդիսանում, և այդ պայքարում հնդիկ պրոլետարիատը ուս-ուսի տված է ընթանում ամբողջ աշխարհի աշխատավորների հետ, որոնց ղեկավարում է Սովետական Միությունը։

Հնդկաստանի միլիոնավոր պրոլետարների սրտից բխած այս խոսքերին արձագանքում են գաղութային մյուս երկրների բանվորների և բոլոր աշխատավորների ջերմ կոչերը։

Խարխլվում են իմպերիալիզմի հիմքերը գաղութներում։ Խփում է բոլոր գաղութային ժողովուրդների ազատագրության ժամը և ռեակցիայի ոչ մի ուժ չի կարող ետ շրջել պատմության անիվը։

Վ. ԳԱՎՐԻԼՈՎ

(«Блокнот агитатора» № 24, 1949 г.)

—○—

# ՊԼԱՆՆԵՐ, ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I.

## ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ, ԲՆԱԿԵԼԻ ՇԵՆՔԵՐԸ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐ-ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԺԱՄԱՆԱԿԻՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԵԼ ՁՄՌԱՆԸ

*1. Ձեռնարկությունները և երկաթուղային տրանսպորտը ձմեռվա պայմաններում աշխատելու համար օրինակելիորեն նախապատրաստելը ետպատերազմյան ստալինյան հնգամյակը չորս տարում կատարելու համար մղվող պայքարի կարևորագույն հարցերից մեկն է։*

*2. Ձեռնարկությունների, ցեխերի, ջրային տնտեսության, տների և հանրակացարանների ժամանակին և բարձրորակ հիմնական և ընթացիկ նորոգումը ձմռան պայմաններում արդյունաբերության և տրանսպորտի բարձր արտադրողականությամբ աշխատելու հիմքն է։*

*3. Վառելիքի փոխադրումը և ձեռնարկությունը հումքով ապահովելը ձմռան շրջանում ձեռնարկությունների անխափան աշխատանքի պայմաններից մեկն է։*



*4. Դպրոցները, հանդիսավայրերը և կուլտուր-կենցաղային հիմնարկությունները ձմռանը ժամանակին նախապատրաստելը սովետական հասարակայնության պարտքն է։*

*5. Բնակարանային ֆոնդը ձմռան համար ժամանակին և լավ նախապատրաստելու գործում բնակարանային կազմակերպություններին օգնություն ցույց տալը բոլոր աշխատավորների խնդիրն է։*

*6. Սոցիալիստական մրցություն կազմակերպենք մեր ձեռնարկությունը ձմռանը լավագույն կերպով նախապատրաստելու համար։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

**Об участии профсоюзных организаций в подготовке промышленных предприятий, жилых помещений и культурно-бытовых учреждений к зиме.** «Труд», 10 июля 1949 г., стр. 1.

**Своевременно подготовить города к зиме.** «Известия», 14 июля 1949 г., передовая.

**По-большевистски подготовиться к зимним перевозкам.** «Гудок», 15 июля 1949 г., передовая.

## II.

## ՉԻՆԱՍՏԱՆԻ ԱԶԱՏԱԳՐՎԱԾ ՇՐՋԱՆՆԵՐԻ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՎԵՐԱԾՆՈՒՆԴԸ

*1. Չինաստանի ժողովրդա-դեմոկրատական ռևոլյուցիայի հաջողությունները հետևանք են երկրի անկա-*

*խության և ազատության համար արտաքին ու ներքին իմպերիալիստների դեմ չին ժողովրդի մղած բազմամյա պայքարի։*

*2. Գոմինդանական ռեակցիայի տիրապետությունից ազատագրված տերիտորիաների սոցիալ-տնտեսական և քաղաքական վերածնունդը հետևանք են լենինյան-ստալինյան գաղափարների դրոշի ներքո պայքարող Չինաստանի կոմունիստական պարտիայի ճիշտ քաղաքականության։*

*3. Ընկեր Մաո Ցզե-դունը դեմոկրատական-կոալիցիոն կառավարության ստեղծման անհրաժեշտության և Չինաստանում ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկայի հետագա կառուցման մեջ նրա ունենալիք խնդիրների մասին։*

*4. Կայուն խաղաղության և ժողովուրդների անկախության համար համաշխարհային դեմոկրատական լագերի մղած պայքարի ուժեղացման գործում Չինաստանի ժողովրդա-դեմոկրատական ռևոլյուցիայի հաջողությունների ունեցած նշանակությունը։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

**Ի. Վ. ՍՏԱԼԻՆ:** ՀամԿ(բ)Պ 14-րդ համագումարը: *Երկեր, 7-րդ հատ., էջ 316-323։*

**Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ:** Հայտարարություն Չինաստանի մասին: *«Ս. Հ.» 13 մարտի 1947 թ., 3-րդ էջ։*

**Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ:** Հոկտեմբերյան Սոցիալիստա-



կան մեծ ռևոլյուցիայի 31-րդ տարեդարձը: *Հայպետհրատ, առանձին բրոշյուրով, 1948 թ., էջ 23—39։*

Չինաստանի ժողովրդա-ազատագրական բանակի գլխավոր շտաբի կոմյունիկեն: *«Ս. Հ.» 19 հունիսի 1949 թ.։*

Մաո Ցզե-դունի ճառը քաղաքական կոնսուլտատիվ նոր խորհուրդ հրավիրող նախապատրաստական կոմիտեի սեսիայում: *«Ս. Հ.», 23 հունիսի 1949 թ.։*

Չինական կոմպարտիայի կենտկոմի անդամ Ժեն Բի-շիի զեկուցումը Չինաստանի երիտասարդության նոր դեմոկրատական միության համագումարում: *«Ս. Հ.», 20 ապրիլի, 1949 թ.։*

**В Министерстве Иностранных Дел СССР.** «Правда», 18 января, 1949 г.

**МАО ЦЗЕ-ДУН.** О диктатуре народной демократии. «Правда», 6 июля 1949 г.

—o—

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Պրոֆ. Մ. ՍԱՆԹՐՈՍՅԱՆ.*— Ինչպես պատրաստել և կարդալ դասախոսությունը: *39 էջ:*

ԺՅՈՒԼ ՎԵՌՆ. Բեգումի հինգ հարյուր միլիոնը. *237 էջ, գինը 9 ռուբլի:*

Պրոֆ. դոկ. ԷԴ. ԱՂԱՅԱՆ.— Լեզվաբանության ներածություն, ըստ լեզվի նոր ուսմունքի: 383 էջ, *գինը 16 ռ.:*

*Ա. Ա. ՄԱՏԹԵՎՈՍՅԱՆ.*— Բազմամյա խոտաբույսերի մշակությունը: *102 էջ, գինը 3 ռ. 20 կ.:*

*Թ. ՀՈՒՐՅԱՆ.*— Բանաստեղծություններ և պոեմներ: *144 էջ, գինը 8 ռ. 50 կ.:*

---

Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

*ՎՖ 03451* *Պատվեր 702* *Տիրաժ 8.100*

*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան*

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 17 1949 г.